Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ» ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹ.

№ 3 ՀՈՒՆՎԱՐ 1947

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ՀԱՍՑԵՆ.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 32—86:

# ՄԵԶ ՀՈՎԱՆԻ Է ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ՄԵԾ ԴՐՈՇԸ

## ԸՆԿ. Գ. Ֆ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

### 1947 ԹՎԻ ՀՈՒՆՎԱՐԻ 21-ԻՆ, Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՀՎԱՆ 23-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՍԳՈ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ

*Ընկերնե՛ր։ Քանիերեք տարի է անցել այն օրվանից, երբ մեռավ Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Այս, 1947 թվին, լրանում է մեծ Լենինի հիմնած սովետական ռեսպուբլիկայի երեսուն տարին։ Դրանից Լենինը մոտ յոթ տարի կարողացավ ղեկավարել սովետական պետությունը։ Լենինի մահվանից հետո մեր պարտիան ահա արդեն քանիերեք տարի պայքարում է Լենինի պատգամների իրագործման համար, ամրապնդում է և բարձրացնում է մեր սովետական պետությունը, կառուցում*

և լենինյան ուղիով առաջ է տանում մեր սովետական հասարակությունը։ Շատ իրադարձություններ տեղի ունեցան այդ լարված տարիներին։ Ո՛չ քիչ դժվար փորձություններ վիճակվեցին Սովետների Ռեսպուբլիկային։ Սովետական ժողովուրդը այդ կարճ ժամկետում մեծ գործեր կատարեց, որոնք արմատապես փոխեցին մեր երկրի դեմքը։ Սոցիալիզմի հաղթանակի կուրսը հաստատ բռնել, սովետական հասարակարգի հաստատման և ծաղկման համար պայքարում չէին մեր պարտիան, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն, նրա առաջնորդ ընկեր Ստալինը։ (Բուռն ծափահարություններ)։ Բոլշևիկների պարտիան այդ բոլոր տարիներին իր լենինյան դրոշը հպարտ տանում էր միշտ դեպի առաջ ու առաջ, բազմապատկելով նրա փառքը։ Սովետական նավը, իր փորձված նավավարի հետ, այդ բոլոր տարիներին փոթորիկների ու ամպրոպների միջով հաստատ ընթանում էր դեպի մեծ նպատակը՝ կոմունիզմը։



I

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԸՆԹԱՆՈՒՄ Է ՄԵԾ ԼԵՆԻՆԻ ՈՒՂԻՈՎ

Լենինի, սովետական պետության հիմնադրի, ղեկավարությամբ սկսվեց սոցիալիստական հասարակության կառուցումը մեր երկրում։ Լենինը սովորեցնում էր, որ Սովետական Ռուսաստանում կա «...անհրաժեշտ ամեն ինչ՝ լիակատար սոցիալիստական հասարակություն կառուցելու համար» (Երկեր, հատ. 27, էջ՝ 392)։

Բոլշևիկների պարտիան համարձակ և վստահորեն ձեռնամուխ եղավ սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի իրագործմանը և համաշխարհային պատմական հաջողություններ ձեռք բերեց։ Պարտիան իր շարքերը համախմբելով ընկեր Ստալինի շուրջը, ջախջախեց ժողովրդի թշնամիներին, ամեն տեսակ կոնտրռևոլյուցիոն տրոցկիստներին, բուխարինականներին և մյուս դավաճաններին ու կապիտուլյանտներին, և սովետական ամբողջ ժողովրդին պայքարի հանեց

սոցիալիզմի համար։ Սովետական ժողովուրդը բոլշևիկների ղեկավարությամբ հաղթահարելով բոլոր դժվարությունները և փորձությունները, կատարեց Լենինի գլխավոր պատգամը. մեր երկրում կառուցեց սոցիալիստական հասարակակարգ՝ կոմունիզմի առաջին աստիճանը։ Երկրում ստեղծվեց խոշոր, ժամանակակից սոցիալիստական արդյունաբերություն։ Սովետական գյուղացիությունը, միավորվելով կոլխոզներում, անդառնալիորեն կանգնեց սոցիալիզմի ուղու վրա։ Շահագործող դասակարգերը ամբողջովին վերացվեցին։ Պարտիան հաջողությամբ կատարեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման, սովետական պետության մեջ բոլոր ազգերի ու ժողովուրդների ազատ զարգացման ու համագործակցության, Սովետական Միության ժողովուրդների բարեկամության ամրապնդման վերաբերյալ Լենինի կտակած խնդիրը։ Պատերազմի նախօրյակին յուրաքանչյուր աշ[illegible]ավոր արդեն պարզորոշ երևում



էր նոր, սոցիալիստական կարգերի շինարարության ուղղությամբ իր կատարած աշխատանքի պտուղները։ Սկսվել էր լիության, բանվորների և գյուղացիների ունևոր կյանքի ժամանակաշրջանը, ժողովուրդը հնարավորություն էր ստացել վայելելու սոցիալիստական կուլտուրայի պտուղները։ Եթե չլիներ պատերազմը, որ ֆաշիստական ճիվաղները փաթաթեցին մեր վզին, սովետական երկիրը այս տարիներին կհասներ նոր հզոր ծաղկման, իսկ սովետական մարդիկ լիովին կվայելեին սոցիալիզմի նյութական և կուլտուրական բարիքները։

Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի կենսագործումը, նախապատերազմյան երեք հնգամյակների իրականացումը մեր երկիրը դարձրին հզոր տերություն. «Դա մի թռիչք էր,— ասաց ընկեր Ստալինը,— որի օգնությամբ մեր Հայրենիքը հետամնաց երկրից դարձավ առաջավոր, ագրարայինից՝ ինդուստրիալ...»։ Դրանով իսկ տնտեսական բազա ստեղծվեց, որը հնարավորություն տվեց կազմա-

կերպելու թշնամու ջախջախումը Հայրենական պատերազմում։ Հենվելով այդ բազայի վրա, սովետական ժողովուրդը և նրա Զինված Ուժերը, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Լենին-Ստալինի անպարտելի դրոշի հովանու տակ, մեծ սխրագործություն կատարեցին՝ պաշտպանելով իրենց սոցիալիստական հայրենիքը, և պատմական հաղթանակ տարան գերմանական ու ճապոնական իմպերիալիստների դեմ։ Պատերազմը ցույց տվեց, որ չկա այնպիսի ուժ, որը կարողանար գերազանցել սովետական հասարակության հզորությանը։

Հնգամյակների տարիներին ստեղծված տնտեսական բազան մեր ժողովրդին հնարավորություն տվեց արդեն պատերազմի ընթացքում, և նրա ավարտումից անմիջապես հետո է՛լ ավելի հիմնավոր կերպով, ձեռնամուխ լինել տնտեսության արագ վերականգնմանը և հետագա խաղաղ շինարարությանը։



Պատերազմից խաղաղության անցումը առաջին տեղը առաջ քաշեց տնտեսական շինարարության, ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման հարցերը։

Պատերազմը մեծ ավերածություններ և կորուստներ պատճառեց մեր երկրին։ Հայտնի է, որ պատերազմը անդրադարձավ նույնիսկ այնպիսի երկրների էկոնոմիկայի վրա, որոնք կողոպտման և ամայացման չենթարկվեցին թշնամու զորքերի կողմից, այնպիսի երկրների, որոնք պատերազմի առաջին տարիներին ամբողջ ուժով չզգացին պատերազմական լարվածությունը։ Հայտնի է, որ այդ երկրները, ինչպես Անգլիան և ԱՄՆ-ը, առավել խոշոր պատերազմական գործողություններ ծավալեցին միայն 1944 թվի հունիսին Արևմտյան Եվրոպա ներթափանցելուց, Եվրոպայում երկրորդ ճակատ բաց անելուց հետո, այսինքն երբ պարզ դարձավ, որ Սովետական Բանակը ի վիճակի է, առանց դաշնակիցների օգնության, սեփական ուժե-

րով օկուպացնելու ամբողջ Գերմանիան և Եվրոպայի ժողովուրդներին ազատագրելու գերմանա-ֆաշիստական լծից։ Սովետական երկիրը, որը պատերազմի առաջին օրերից պետք է իր բոլոր ուժերը լարեր թշնամուն ետ մղելու համար, և զգաց գերմանա-ֆաշիստական ռազմական արշավանքի ամբողջ ծանրությունը, առանձնապես խիստ տուժեց պատերազմից։

Հասկանալի է, որ ծանր պատերազմի, երկրի շատ շրջանների ավերածության հետևանքներն այժմ անդրադառնում են մեր պետության տնտեսական դրության վրա և առաջ են բերում մի շարք դժվարություններ։ Այսպես, իրեն խիստ զգալ է տալիս ածուխի և մետաղի, անտառափայտի, շինանյութերի և սարքավորման շատ տեսակների պակասը։ Պատերազմը թուլացրեց գյուղատնտեսության արտադրողական ուժերը։ Անցած տարում լրացուցիչ դժվարություններ ստեղծեցին Ուկրաինայում և ՍՍՌՄ մի շարք այլ մարզերում տեղի ունեցած սաստիկ երաշտը և անբերրիությունը,



որոնք դժվարացրին մեր երկրի պարենային դրությունը։

Այժմ սովետական ժողովուրդը լայն ճակատով վերացնում է պատերազմի հետևանքները և պայքար է ծավալում տնտեսության հետագա վերելքի համար։ Հայրենիքի պաշտպանության գործում սովետական մարդկանց ցուցաբերած հայրենասիրությունը այժմ մարմնավորվում է մեր բանվորների, կոլխոզնիկների, սովետական ինտելիգենցիայի աշխատանքային խանդավառության մեջ։

Ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի կատարումը, որը սովետական ժողովուրդը ընդունել է որպես իր կենսական շահերին խորապես համապատասխանող մարտական ծրագիր, է՛լ ավելի կուժեղացնի և կբարձրացնի սովետական երկիրը։

Նոր, հետպատերազմյան հնգամյակի առաջին տարին նշանավորվեց ժողովրդական տնտեսության ասպարեզում ձեռք բերված զգալի նվաճումներով։ Արդյունաբերությունը վերակա-

ռուցվել է քաղաքացիական արտադրանք թողարկելու համար։ Գերմանական օկուպացիայից ազատագրված շրջանները արագ վերածնվում են։ Այդ շրջանների ազատագրման սկզբից ի վեր վերականգնված է 25 դոմենյան հնոց, ավելի քան հարյուր մարտենյան հնոց, մի քանի տասնյակ գլանող դազգահ։ Լայնորեն ծավալվել է բնակարանների շինարարությունը հատկապես թշնամու կողմից ավերված շրջաններում։ 1945 թվի համեմատությամբ սև մետալուրգիայի ձեռնարկությունները 1946 թվին չուգունի արտադրությունը ավելացրել են 12 տոկոսով, պողպատինը՝ 9 տոկոսով, գլանվածքինը՝ 13 տոկոսով։ Նավթի հանույթը ավելացել է 12 տոկոսով, ցեմենտի արտադրությունը՝ 85 տոկոսով, տրակտորների թողարկումն ավելացել է 72 տոկոսով, բեռնատար ավտոմոբիլների արտադրությունը աճել է 38 տոկոսով։ Անցած տարում զգալի չափով ավելացել է էլեկտրակայանների կարողությունը։ Տեքստիլ և թեթև արդյունաբերությունը 1946



թվին երկրին ավելի շատ ապրանք տվեց, քան 1945 թվին։ Բամբակեղեն գործվածքների թողարկումը ավելացել է 17 տոկոսով, բրդեղեն գործվածքներինը՝ 30 տոկոսով, մետաքսեղեն գործվածքներինը՝ 36 տոկոսով, կաշվե կոշիկինը՝ 28 տոկոսով։ Արդյունաբերության քաղաքացիական արտադրանքը, ամբողջությամբ վերցրած, 1946 թվին ավելացել է 20 տոկոսով։ Երկաթուղիներում օրական միջին բեռնումը բարձրացել է 13 տոկոսով։

Պարտիան և Սովետական կառավարությունը անցած տարի մի շարք կարևոր միջոցներ ձեռք առան կոլխոզները, սովխոզները և ՄՏ կայաններն ամրապնդելու համար։ Անդուլ հոգալով կոլխոզների հանրային տնտեսությունն ամրապնդելու ու զարգացնելու և կոլխոզնիկների բարեկեցությունը բարձրացնելու մասին, պարտիան և կառավարությունը միջոցներ ձեռք առան, որպեսզի վճռականորեն վերջ տրվի կոլխոզային հողերի և

կոլխոզների գույքի վատնման տա-
րածված փաստերին, անշեղորեն
պահպանվի գյուղատնտեսական ար-
տելի Կանոնադրությունը։ Սովետա-
կան կառավարությունը պարենա-
մթերքով և սերմացուով զգալի օգ-
նություն ցույց տվեց երաշտից տու-
ժած կոլխոզներին։ Ընկեր Ստալինը
խնդիր դրեց՝ արագ բարձրացնել
գյուղատնտեսությունը, լրջորեն բարձ-
րացնել բերքատվությունը և բեր-
քի կայունության հասնել մեր
սովետական դաշտերում։ Այդ կա-
պակցությամբ առանձնապես կարևոր
նշանակություն են ստանում դաշտա-
նացանքի ուժեղ նախապատրաստու-
թյունը և նրա հաջող անցկացումն
այս տարի։ Պարտիայի Կենտրոնա-
կան Կոմիտեն, ընկեր Ստալինը պա-
հանջում են, որպեսզի պարտիական
բոլոր կազմակերպությունները տո-
գորվեն այդ գործի հսկայական կա-
րևորության գիտակցությամբ և պայ-
քար կազմակերպեն գյուղատնտեսու-
թյան վերելքի համար։ Այդ խնդրի



հաջող լուծումից զգալի չափով կախ-
ված են հումքի անխափան մատակա-
րարումը արդյունաբերությանը, ապ-
րանքաշրջանառության աճումը, աշ-
խատավորության բարեկեցության
բարձրացումը։ Ուստի և այժմ է՛լ
ավելի հրամայաբար է դրվում
յուրաքանչյուր կոլխոզի, որպես սո-
ցիալիստական խոշոր տնտեսության,
ղեկավարումը բարելավելու խնդիրը։
Ընկեր Ստալինը պարտիական և սո-
վետական կազմակերպությունների
առաջ խնդիր է դնում՝ ապահովել
կոլխոզները մարդկանց որոշ մինի-
մումով, «...որոնք ընդունակ են պլա-
նավորելու տնտեսությունը և այն
կազմակերպված կերպով վարելու»,
մեր գյուղն ամրապնդել զգալի թվով
լավ կազմակերպիչներով և քաղաքա-
կան աշխատողներով։ Այդ խնդրի
կատարումը մեր կոլխոզները կդարձ-
նի է՛լ ավելի ուժեղ։

Ներկայումս կարևորագույն նշա-
նակություն է ստացել ժողովրդի բա-
րեկեցությունը բարձրացնելու կարե-
վոր միջոցներից մեկի՝ սովետական

առևտրի ընդլայնման և ամրապնդ-
ման հարցը։ Պարտիան և կառավա-
րությունը միջոցներ են ձեռք առել
հետպատերազմյան վերակառուցման
և ապրանքաշրջանառության զար-
գացման համար։ Ավելացված են
վաճառքի հանվող լայն սպառման
ապրանքների ֆոնդերը։ Անցման մի-
ջոցներ են ձեռք առնված առևտրա-
կան բարձր գները նորմավորված
մթերային ցածր գների հետ մերձեց-
նելու, քարտային սիստեմը վերաց-
նելու և միասնական գներ մտցնելու
պայմանների ստեղծման համար։
Կոոպերատիվ առևտրի ծավալման և
պետական ու կոոպերատիվ ձեռնար-
կությունների կողմից լայն սպառ-
ման ապրանքների արտադրությունն
ավելացնելու մասին կառավարու-
թյան որոշումները արդեն մոտիկ
ապագայում շուկայում լրջորեն կա-
վելացնեն լայն սպառման ապրանք-
ների քանակը։

Օգտագործելով պլանային տնտե-
սության առավելությունները, Սով-
ետական պետությունը կազմակերպ-



ված կերպով կատարեց տնտեսու-
թյան անցումը դեպի խաղաղ շինա-
րարության ուղին։ Այժմ առանձնա-
պես մեծ է շինարարության և արտա-
դրության տեմպերի դերը, որովհետև
այժմ հենց տեմպերի հետ է կապված
պատերազմի հետևանքների ամենա-
արագ հաղթահարումը, տնտեսու-
թյան վերականգնումը և զարգացու-
մը, մեր ժողովրդի կյանքի նյութա-
կան պայմանների բարելավումը։

Լենինը մեծ նշանակություն էր
տալիս սոցիալիստական շինարարու-
թյան տեմպերին։ Դեռ այն ժամանակ,
երբ երկրում իշխում էր տնտեսական
փլուզումը, Լենինը նշում էր.

«Տեղերում անշեղորեն պետք է
ձգտել, որպեսզի պլանը կատարվի
ավելի շուտ քան նշանակված է, որ-
պեսզի մասսաները տեսնեն, որ ար-
դյունաբերության լիակատար վերա-
կանգնումից մեզ բաժանող երկար
ժամանակամիջոցը կարող է կրճատվել
փորձով։ Դա կախված է մեզանից։
Նկե՛ք յուրաքանչյուր արհեստանո-

ցում, յուրաքանչյուր դեպքում, յուրաքանչյուր մարզում բարելավենք տնտեսությունը, և այն ժամանակ մենք ժամկետը կկրճատենք»: (Երկեր, հատ. 26-րդ, էջ 43): Երբ քաղաքացիական պատերազմը ավարտվելու վրա էր, Լենինն ասում էր. «Պատերազմում ցուցաբերած եռանդը պետք է նույն չափով ցուցաբերվի նաև աշխատանքի ասպարեզում»: (Երկեր, հատ. 25-րդ, էջ 21): Աշխատանքի ճակատում հաղթանակ տանելու համար Լենինը կոչ էր անում բոլոր գիտակից աշխատավորներին ցուցաբերել ավելի համառություն, տոկունություն, կայունություն, կազմակերպչական և վարչական ավելի մեծ արվեստ:

Այժմ, պատմական այլ իրադրության մեջ, ընկեր Ստալինը սովետական ժողովրդի առաջ հարց է դնում արագացնել մեր տնտեսության վերականգնման ու զարգացման տեմպերը, որպես միջոց հետպատերազմյան ժամանակաշրջանի դժվա-



րությունները ամենաարագ կերպով հաղթահարելու համար: Այդ խնդիրը լուծելու համար անհրաժեշտ է զգալիորեն բարձրացնել շինարարության և արտադրության աճման տեմպերը արդյունաբերության բոլոր ճյուղերում, արագացնել արդյունաբերության և տրանսպորտի ձեռնարկությունների վերականգնումը և նորերի կառուցումն ու գործարկումը, առաջ մղել արդյունաբերության ետ մնացող ճյուղերը և արտադրական պլանները չկատարող ձեռնարկությունները, ըզգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը բոլոր ձեռնարկություններում:

Հայտնի է, թե աշխատանքի արտադրողականության բարձրացման գործին որքան մեծ նշանակություն էր տալիս Լենինը: Ընկեր Ստալինը բազմիցս ուշադրություն է հրավիրել այն բանի վրա, որ ժամանակակից պայմաններում բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և արագացնել արդյունաբերության

զարգացումը՝ նշանակում է հավա-
սարվել առաջավոր բանվորներին,
առաջավոր գործարաններին, հանքա-
հորերին, էլեկտրակայաններին, եր-
կաթուղիներին, արտադրության բար-
ձըր կուլտուրա ունեցող և ռիթմիկ
կերպով աշխատող, իրենց պետա-
կան պլանները սիստեմատիկորեն
կատարող և գերակատարող ձեռնար-
կություններին։ Մեր սոցիալիստա-
կան հասարակությանը խորթ է հետ
մնացող մարդկանց և հետ մնացող
արտադրությանը հավասարվելու ըս-
կըզբունքը։ Ներկա պայմաններում,
երբ սովետական երկիրը պետք է
կյանքի բոլոր բնագավառներում ա-
րագորեն առաջ շարժվի, մեր բան-
վորները, տնտեսվարները, սովետա-
կան ու պարտիական աշխատողները
չեն կարող բավարարվել արտադրու-
թյան միջին ցուցանիշներով։ Սովե-
տական հասարակությունը առաջա-
վոր հասարակություն է, որի զարգա-
ցումը ընթանում է առաջընթաց, վեր-
ընթաց ուղղությամբ։ Այդ շարժ-



մամբ պետք է ընդգրկվեն ամբողջ
բանվոր դասակարգը, ամբողջ գյու-
ղացիությունը, ամբողջ ինտելիգեն-
ցիան։ Այդ նշանակում է, որ պետք
է ամբողջ ուժով ձգտել, որպեսզի սո-
վետական երկրի պայմաններում ի-
րագործվի տնտեսավարման լենին-
յան-ստալինյան սկզբունքը և վճռա-
կանորեն ձգել ետ մնացող ու մի-
ջակ աշխատող ձեռնարկությունները
առաջավորներին հասցնելու համար,
վերջ տալ արտադրության մեջ միջին
թվերին, միջին արդյունքներին հա-
վասարվելուն։ Երկրում բանվորների
ու ծառայողների լայն ծավալված
սոցիալիստական մրցությունը կարե-
վորագույն դեր կխաղա այդ խնդրի
կատարման գործում։

Երկրի առաջ ծառացած տնտեսա-
կան բարդ խնդիրները հաջողությամբ
լուծելու, իսկական բոլշևիկյան տեմ-
պեր զարգացնելու համար պետք է
օր ավուր կատարել Լենինի պահանջ-
ները տնտեսության կառավարման
սիստեմը մշտապես բարելավելու, ա-

պարատի օպերատիվությունը և աշխատունակությունը բարձրացնելու վերաբերյալ, հաստիքների ուռճացման դեմ, ամեն տեսակ հնամոլության, քարացածության և դանդաղաշարժության դեմ պայքարելու վերաբերյալ։ Մեր սովետական ու տնտեսական աշխատողները պարտավոր են մշտապես հիշել Լենինի և Ստալինի ցուցումները՝ ամեն ինչում խստագույն խնայողություն կիրառելու, երկրում եղած բոլոր ռեսուրսները առավել ռացիոնալ կերպով օգտագործելու անհրաժեշտության վերաբերյալ, կորուստների, անտնտեսվարության և անարտադրողական ծախսերի դեմ պայքարելու, տնտեսական հաշվարկը խստիվ կենսագործելու, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կադրերի հաջող պատրաստման, ճիշտ բաշխման և օգտագործման անհրաժեշտության վերաբերյալ։

Մեր երկիրը նորից ծավալում է այժմ իր հզոր ուժերը խաղաղ աշխա-



տանքի ճակատում։ Ծանր պատերազմը մնացել է ետևում, բայց մեր պարտիան հենց այն պատճառով է կոչվում լենինյան պարտիա, որ թշնամու դեմ տարած մեծ հաղթանակից հետո ևս սովորեցնում է ժողովրդին չհանգստանալ դափնիների վրա, այլ լինել աչալուրջ և զգաստ։ Չէ՞ որ հայտնի է, որ գերմանա-ճապոնական իմպերիալիստների ջախջախումից հետո ևս դեռ չեն հանգստանում նոր պատերազմի այժմյան հրձիգները. Չերչիլի ու նրա բարեկամների նման մարդիկ Անգլիայում ու ԱՄՆ-ում։ Մեր ժողովուրդը ճիշտ է ասել՝ խևին խրատը ի՞նչ կանի, սևին սապոնն ի՞նչ կանի։ (Դահլիճում ընդհանուր աշխուժություն): Բայց պետք է ուղղակի ասել, որ ժամանակակից ռեակցիան բացահայտորեն գերագնահատում է իր ուժերը ինչպես արտաքին քաղաքական ասպարեզում, այնպես էլ կապիտալիստական երկրների ներսում դեմոկրատիայի և բանվոր դասակարգի դեմ իր պայքարում։ Խաղաղության թշնամիների համար այժմ այնքան էլ հեշտ չէ նոր պատերազմի սանձալուծումը։

ժողովուրդները ցանկանում են խա-
ղաղություն և պայքարում են դրա
համար։ Ճիշտ է, բուրժուական եր-
կրների բանվոր դասակարգը դեռևս
թերագնահատում է իր ուժերը խա-
ղաղության գործի համար մղվող
պայքարում, իր իրավունքների համար
մղվող պայքարում, սակայն դեմոկրա-
տիայի ու խաղաղության ուժերը շատ
ավելի են գերազանցում ռեակցիայի
և պատերազմի կողմնակիցների ուժե-
րին։ Մեր Սովետական կառավարու-
թյունը, մեր պարտիան, հետևելով
Լենինի պատգամներին, կիրառում են
հետևողական քաղաքականություն, ո-
րի նպատակն է՝ կազմակերպել ժողո-
վուրդների միջև կայուն դեմոկրատա-
կան խաղաղություն, խափանել ժողո-
վուրդների միջև ատելության բոցը
հրահրելու, պառակտում և թշնամանք
սերմանելու, համաշխարհային նոր
պատերազմի համար հող նախապատ-
րաստելու ասպարեզում իմպերիա-
լիստների ու ֆաշիստական թափթը-
փուկների ամեն տեսակ տենձգու-
թյունները։ Եվ սովետական եր-



կիրը կարող է պարծենալ ժողովուրդ-
ների խաղաղ կյանքի, դեմոկրատա-
կան կարգերի և գաղափարների հաղ-
թանակի համար մղվող այդ ազնիվ
պայքարում իր հաջողություններով,
կարող է պարծենալ մեր պետության
արտաքին քաղաքականության ասպա-
րեզում լենինաբար աշխատող իր գոր-
ծիչներով։ (Երկարատև ծափահարու-
թյուններ)։

Ընկերնե՛ր, 23 տարի մեր պարտիան
Լենինի՝ իր հիմնադրի և դաստիարակ-
չի մահից հետո առաջ է ընթացել
նրա մեծ դրոշի հովանու ներքո։ Շնոր-
հիվ մեր պարտիայի լենինյան ճիշտ
քաղաքականության, սովետական եր-
կիրն անցել է ժամանակակից առաջա-
վոր, առաջադեմ ուժերի գլուխը։ Բոլ-
շևիկների պարտիան, սովետական ժո-
ղովուրդը պարծենում են նրանով, որ
իրենք դաստիարակվել են ժամանա-
կակից դարաշրջանի մեծագույն հան-
ճարի կողմից, որ իրենք պայքարում
են Լենինի՝ աշխարհում առաջին սո-
ցիալիստական պետության կազմա-
կերպչի և ղեկավարի, անդասակարգ

կոմունիստական հասարակության կառուցման հիմնադրի, մտքի և ռևոլյուցիոն գործողության հսկայի դրոշի ներքո։ Լենինյան պարտիան արժանի եղավ իր հիմնադրին և ուսուցչին։ Նա իր առաջնորդի ուսմունքը ընդունեց որպես մարտական ծրագիր։ «Այդպես է սովորեցրել մեզ Լենինը,— ասաց ընկեր Ստալինը,— և մենք այդ գործում ընթացել ենք Լենինի ուղիով»։

Թո՛ղ ուրեմն առաջիկայում ևս բազմապատկվեն և աճեն սոցիալիզմի ուժերը ի ուրախություն աշխատավորների, ի սարսափ նրանց թշնամիների։ Թո՛ղ ապրի և ամրապնդվի մեր մեծ սոցիալիստական Հայրենիքը։ (Ծափահարություններ)։

## II

## ԱՊՐԵԼ ԵՎ ԱՇԽԱՏԵԼ ԻԼՅԻՉԻ ՆՄԱՆ

Մեր պարտիայի ուժը, սովետական մարդկանց ուժը այն է, որ նրանք պայքարում, աշխատում և իրենց կյանքը կառուցում են Իլյիչի նման։ Ընկեր Ստալինն ասում է.



«Հիշեցե՛ք, սիրեցե՛ք, ուսումնասիրեցե՛ք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին»։

«Նոր կյանքը, նոր կենցաղը, նոր կուլտուրան կառուցեցեք Իլյիչի նման»։

Լենինը գտնում էր, որ կոմունիզմը պրակտիկ գործերի մեջ մարմնավորելու համար նոր աշխարհը կերտող մարդկանցից կպահանջվի գիտակցականության և կուլտուրականության բարձր աստիճան։

Այդ պատճառով Լենինը առաջնակարգ նշանակություն էր տալիս աշխատավորության կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելուն։ «Մենք մարքսիստական ծրագրով դաստիարակեցինք պրոլետարիատի պարտիան,— ասում էր Լենինը,— այդպե՛ս էլ պետք է դաստիարակել այն տասնյակ միլիոնավոր աշխատավորներին, որոնք կան մեզ մոտ»։ (Երկ. հատ. 24, էջ 152—153)։

Պարտիան իրագործելով իր ուսուցչի այդ պատգամը, հսկայական աշ-

*խատանք կատարեց սովետական մարդկանց սոցիալիստական գիտակցականությունը զարգացնելու, աշխատավորության գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկները հաղթահարելու, նրանց մեջ սոցիալիզմ կերտողներին հատուկ նոր հատկություններ դաստիարակելու ուղղությամբ։*

*Այժմ, երբ մեր երկիրը պետք է ամենակարճ ժամկետում հաղթահարի հետպատերազմյան ժամանակվա դժվարությունները, իրագործի սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և աստիճանաբար կոմունիզմին անցնելու խնդիրը, առանձնապես կարևոր է սովետական մարդկանց սոցիալիստական գիտակցականության բարձրացումը։ Տնտեսության փլուզման տարիներին, որ առաջ էր եկել պատերազմից, Լենինը բանվորներին և գյուղացիներին կոչ էր անում աշխատել ծանր դրությունից դուրս գալու համար և ասում էր, որ «...մենք նոր անարյուն պայքար ենք սկսում այդ գիտակցակա-*



*նության համար»։ (Երկ. հատ. 25, էջ՝ 15)։*

*Սոցիալիզմը իր կառուցողներից՝ բանվորներից, գյուղացիներից, ինտելիգենցիայից պահանջում է պետությունն կառավարելու, տնտեսությունը գիտակցաբար վարելու հմտություն։ Այդ բանի համար անհրաժեշտ է, որ սովետական բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան պարզ ներպում ըմբռնեն իրենց առաջ կանգնած խնդիրները, կարողանան կյանքում ժամանակին տեսնել և պաշտպանել նորը, սոցիալիստականը. ճանաչել և վերջ դնել այն բոլորին, ինչը քաշում է դեպի հետ, արգելակում է սոցիալիզմի ամրապնդմանն ու աճմանը։ Կոմունիզմը, ասում է Լենինը, պետք է մատչելի դառնա բանվորական մասսաներին, որպես նրանց սեփական գործ։*

*Մեր բոլշևիկյան պարտիան ժողովրդի կոմունիստական դաստիարակության ամբողջ աշխատանքը կազմակերպում է լենինյան գաղափարների հիման վրա, լենինիզմի հիման*

վրա։ Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն մի շարք կարևոր միջոցառումներ է ձեռք առել աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը բարելավելու, պարտիական կազմակերպությունների քաղաքական աշխատանքը ուժեղացնելու, պարտիայի գաղափարական և կուլտուրական ամբողջ աշխատանքը բարձրացնելու համար։

Վերջին տարիներս հրատարակվել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների շատ երկեր։ Բավական է ասել, որ սովետական իշխանության տարիներին Լենինի և Ստալինի երկերը հրատարակվել են 612 միլիոն 360 հազար օրինակով։ Հրատարակվել են 37 միլիոն 433 հազար օրինակով Մարքսի և Էնգելսի երկերը։ Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն միջոցներ է ձեռք առել Լենինի երկերի չորրորդ հրատարակությունը ավելի արագ լույս ընծայելու համար։ Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ տպագրվում է ընկեր Ստալինի երկերի առաջին հրատարակությունը։ Առաջին



երեք հատորը արդեն լույս են տեսել։ Կենտրոնական Կոմիտեի ցուցումով, 10 միլիոն օրինակ տիրաժով, նորից հրատարակվեց «ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացը»։ Լենինի և Ստալինի երկերում ամփոփված է սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և մեր երկրում սոցիալիստական հասարակության կառուցման համար, սովետական պետության ստեղծման ու ամրապնդման համար բոլշևիկյան պարտիայի պայքարի փորձը, է՛լ ավելի զարգացված և նոր փորձով հարստացված է մարքսիստական տեսությունը։ Մեր պարտիայի հիմնադիրների և ուսուցիչների երկերի հրատարակությունը կարևորագույն դեր կխաղա մեր կադրերի դաստիարակության, գաղափարական կոփման գործում։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և անձամբ ընկեր Ստալինը նշեցին՝ հասարակական գիտությունների, գրականության, արվեստի ասպարեզի մի քանի երկերում եղած խոշոր թերությունները։ Գրականու-

թյան, արվեստի, գիտության մի շարք երկերում երևան եկած գաղափարազրկությունը, ապոլիտիկությունը վերացնելու, բուրժուական հայացքների վերաբերմամբ անթույլատրելի լիբերալիզմին վերջ դնելու ուղղությամբ պարտիայի ձեռք առած միջոցառումները ջերմ պաշտպանություն գտան մեր կադրերի, ինտելիգենցիայի ամենալայն շրջաններում։ Այդ միջոցառումների հետևանքով մեր երկրում տեղի է ունենում կուլտուրայի և արվեստի նոր վերելք, ուժեղանում է պարտիական կազմակերպությունների գաղափարական, պարտիական-քաղաքական և պրոպագանդիստական աշխատանքը, ավելի բարձր աստիճանի է հասցվում կադրերին բոլշևիկյան մարտական տրադիցիաների ոգով, լենինիզմի ոգով դաստիարակելու ամբողջ գործը։ Պետք է ենթադրել, որ դա առաջ կբերի նաև մեր ինստիտուտների և հասարակական գիտությունների՝ պատ-



մության, իրավունքի, էկոնոմիկայի, փիլիսոփայության, միջազգային հարաբերությունների ասպարեզում աշխատող բոլոր գիտնականների գործունեության վերելք։

Պարտիան կարևոր միջոցառումներ ձեռք առավ աշխատավորության մեջ քաղաքական-դաստիարակչական և կուլտուրական ամբողջ աշխատանքը ուժեղացնելու համար։ Իր դաստիարակչական աշխատանքում պարտիան ղեկավարվում է ընկեր Ստալինի այն ցուցումով, որ սովետական մարդիկ իրենց առաջ ունենան մեծ Լենինի մեծ կերպարը և աշխատեն Լենինի նման։

Աշխատել Լենինի նման՝ նշանակում է անձնվիրաբար սիրել սովետական Հայրենիքը, իր սոցիալիստական Հայրենիքը, իր ժողովուրդը, լինել սովետական բոցաշունչ հայրենասեր, բուռն եռանդով աշխատել Հայրենիքի բարօրության համար, պատրաստ լինել նրան թշնամիներից պաշտպանելու համար, անվեհեր լի-

նել մարտում և անողոք՝ դեպի ժո-
ղովրդի թշնամիները։ Այդ նշանակում
է նաև պահել, պահպանել ու ամրա-
պընդել Լենինի հուշակած՝ Սովետա-
կան Միության ժողովուրդների եղ-
բայրության ու բարեկամության քա-
ղաքականությունը և ամեն կերպ
ամրապնդել այդ բարեկամությունը։

Նմանվել Լենինին և հետևել նրան
ամեն բանում՝ նշանակում է համար-
ձակ նորարար լինել սոցիալիստական
կյանքի կառուցման մեջ, լինել կոն-
սերվատիզմից, հնամոլությունից և
անշարժությունից ազատ մարդ, խու-
ճապի չենթարկվել դժվարությունների
ժամանակ, համարձակ առաջ գնալ և
իր ետևից տանել մյուսներին, ըս-
տեղծագործորեն մոտենալ հարցերի
լուծմանը։ Լենինը սովետական
մարդկանց մեջ դաստիարակել է հա-
մառություն նպատակին հասնելու
գործում, դժվարությունները հաղթա-
հարելու ռևոլյուցիոն վճռականություն։
Ընկեր Ստալինն ասում է, որ բոլշևիկ-
ները պետք է կարողանան իրենց



մեջ միացնել «ռևոլյուցիոն հումկո-
թափը բոլշևիկյան շինարարների հա-
մառ գործարարության հետ»։

Նմանվել Լենինին՝ նշանակում է
առույգ լինել կյանքում և սո-
ցիալիզմի առաջընթացի համար մըղ-
վող պայքարում, լինել ճշմար-
տացի ու ազնիվ, նայել առաջ
և հասնել նորանոր հաջողություն-
ների, խորապես հավատալ մեր պար-
տիայի գործին, մեծ Լենինի գործին։
Առուգությունը, վստահությունը իր
ուժերի նկատմամբ, կոմունիզմի ճա-
նապարհին եղած ամեն տեսակ դըժ-
վարությունները և խոչընդոտները
հաղթահարելու պատրաստակամու-
թյունը այն հիանալի հատկություն-
ներն են, որոնք բոլշևիկների պար-
տիան դաստիարակել է սովետական
մարդկանց մեջ։

Ո՞վ կարող է այժմ ժխտել, որ այդ
վեհ ու ազնիվ հատկությունները յու-
րահատուկ են սովետական միլիոնա-
վոր ու միլիոնավոր մարդկանց,
որոնք ապրում և աշխատում են

Իլյիչի նման, որ դա մեր պարտիայի մեծ հաղթանակն է։

Ո՞վ կարող է այժմ ժխտել, որ այդ բանում վառ կերպով դրսևորվել է մեզ մոտ ձեռք բերված՝ ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը, մի միասնություն, որն այնպես խոր կերպով և ճշմարտացիորեն արտահայտում է հասարակության վիճակը սոցիալիզմի դարաշրջանում։

Սովետական մարդու մեջ նոր հատկություններ դաստիարակելու և հաստատելու գործում լենինյան պարտիայի անդամները առանձնահատուկ եռանդով պետք է ձգտեն արժանի լինել մեր մեծ ուսուցչին։ Մեր լենինյան պարտիայի, ռևոլյուցիոներների պարտիայի անդամները պետք է իրենց ամբողջ աշխատանքում գտնվեն ամենաառաջավոր գծում։ Ձեռնարկությունում աշխատող բոլշևիկը պարտավոր է լինել առաջավոր, իր պլանը անպայման և հավելումով կատարող առաջավոր, որին կարող է և պետք է հավասարվի յուրաքանչյուր



բանվոր։ Գյուղում աշխատող բոլշևիկը պետք է լինի կոլխոզի սոցիալիստական կյանքի ակտիվ կազմակերպիչ, կոլխոզային տնտեսավարության առաջավոր փորձի հմուտ տարածող, կոլխոզների հանրային տնտեսության ամրապնդման մարտիկ և պետության ու կոլխոզնիկների շահերի պաշտպան։ Խոսքը, հետևաբար, վերաբերում է արտադրության մեջ և ամբողջ սովետական կյանքում կոմունիստների ավանգարդային առաջավոր դերը է՛լ ավելի ուժեղացնելուն։ Ինչ պոստում էլ կանգնած լինի բոլշևիկը՝ ձեռնարկությունում, կոլխոզում, հիմնարկությունում՝ նա պետք է իր ղեկավար դերը իրագործի որպես պետության շահերի պաշտպան, որպես պետական շահերի և պետական կարգապահության ամեն տեսակ խախտումների դեմ պայքարող մարտիկ։

Մասսաների ղեկավարների և կազմակերպիչների պարտականությունները շատ արժանվույն կատարելու, մեր սովետական կյանքում առաջիկա-

յում ևս առաջատար ու առաջավոր դեր խաղալու համար կոմունիստները պետք է շարունակ կատարելագործվեն, ավելի խոր կերպով և ստեղծագործորեն տիրապետեն լենինյան մեծ ուսմունքին, հասնեն քաղաքական է՛լ ավելի մեծ հասունության, իրենց մեջ ներծծեն և իրենց գործունեության մեջ հաշվի առնեն սոցիալիստական շինարարության միշտ նոր ու նոր փորձը։ Կոմունիստը պարտավոր է շարունակ ընդլայնել իր մտահորիզոնը, ձգտել այսօր ավելի կրթված և կուլտուրական լինել, քան երեկ, իսկ վաղը՝ ավելի քան այսօր։ Կոմունիստը պարտավոր է լինել մեր լենինյան պարտիայի քաղաքականության ամենամարտական և եռանդուն հաղորդիչը։

Սովետական մարդկանց մեջ նոր, սոցիալիստական հատկությունների դաստիարակումը պատմականորեն անհրաժեշտ գործ է։ Դա կազմում է կոմունիստական հասարակության կառուցման պլանի էական մասը։ Դա պահանջում է համառ աշխատանք



սոցիալիզմի կառուցման գործն արգելակող ամեն տեսակ արմատացած նախապաշարմունքները, քարացած սովորույթները, կապիտալիզմի մնացուկները ոչնչացնելու համար։

Այդ նոր հատկությունների դաստիարակումը սովետական մարդկանց մեջ, նրանց կուլտուրականության անընդհատ աճը նշանակում է սովետական միլիոնավոր մարդկանց մտավոր և կուլտուրական գերազանցություն սահմանել բուրժուական երկրների մարդկանց քաղաքակրթվածության, զարգացման բնույթի և մակարդակի նկատմամբ։

Մեր բոլշևիկյան պարտիան այսպես է կենսագործում Լենինի կարևորագույն պատգամներից մեկը։

Սովետական ժողովրդին լենինիզմի ոգով, կոմունիստական գիտակցականության ոգով դաստիարակելու իր այդ աշխատանքում մեր պարտիան իր առաջ ունի իր առաջնորդների՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի և ընկեր Ստալինի մեծ կերպարները։ Յուրաքանչյուր բոլ-

շևիկ և անկուսակցական աշխատավոր ուշադիր ուսումնասիրելով, խոբանալով մեր պարտիայի ղեկավարների և առաջնորդների ռևոլյուցիոն կյանքի պատմության, եռուն գործունեության պատմության մեջ, տեսնում է ժողովրդին անձնվիրաբար ծառայելու կենդանի, վսեմ օրինակ։ Նրանց կենսագրության, նրանց կյանքի ու գործունեության մեջ մարմնավորված է մեր պարտիայի մեծ փորձը, մարմնավորված է մարքսիստական գիտությունը՝ նրա զարգացման և կյանքում հմտորեն կիրառելու մեջ։ Լենինի և Ստալինի կենսագրություններում սովետական մարդիկ տեսնում են իմաստության աղբյուր, պարտիայի քաղաքական մեծ փորձի գանձարան, լենինյան-ստալինյան գաղափարների ըմբռնման աղբյուր։ Այստեղից հասկանալի է, թե ինչու մեր պարտիայի և անկուսակցական աշխատավորների ամենալայն շրջաններում այնքան ուժեղ է մեր պարտիայի հիմնադիրների և առաջնորդների կենսագրությունները ուսումնասիրելու ձգտումը, այնքան



վառ և ուժեղ է նրանց կյանքից ու գործունեությունից ոգեշունչ օրինակ քաղելու ցանկությունը հանուն սովետական Հայրենիքի հետագա սխրագործություններ կատարելու համար։

### III

## ԼԵՆԻՆՅԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐ ԵՎ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆ ՏՎՈՂ ՈՒԺՆ Է

Բոլշևիկների պարտիայի ստեղծումը և դաստիարակումը Լենինի մեծ ծառայությունն է։

Մեր լենինյան պարտիան իրեն լիովին ցույց է տվել որպես բանվոր դասակարգի մարտական կազմակերպություն, աշխատավորների քաղաքական առաջնորդ, որը ժողովրդին տանում է իր ետևից մեծ սխրագործությունների, կարողանում է գտնել սովետական երկրի կյանքում ամենադժվարին և բարդ կենսական հարցերի ճիշտ լուծումը։ Որքան այդպիսի հարցեր են ծառացել և ծառանում մեր Հայրենիքի կյանքում։ Եվ որքա՜ն մտածված կեր-

պով, յուրաքանչյուր անգամ կշռադատելով բոլոր պլյուսներն ու բոլոր մինուսները, պարտիան իմաստուն կերպով է լուծում այդ հարցերը։ Եթե ներկայումս Սովետական Միությունը աշխարհի տերությունների մեջ հանդիսանում է մի մեծ ուժ, որի հետ բոլորը ստիպված են հաշվի նստել, ապա մեր ժողովուրդը դրա համար պարտական է մեր պարտիայի քաղաքականությանը։ Եթե Սովետական Միությունը իր թշնամիներին ջախջախեց պատերազմում և այժմ ամբողջ լայնությամբ ծավալում է տնտեսական շինարարությունը, սրընթաց առաջ է սլանում, ապա սովետական մարդիկ արդարացիորեն այդ կապում են կոմունիստների պարտիայի, նրա ուղեղ և ուղղություն տվող ուժի՝ լենինյան-ստալինյան Կենտրոնական Կոմիտեի գործունեության հետ։ Եթե մեր ժողովուրդը, իր ճանապարհին հանդիպելով զգալի դժվարությունների, ամեն անգամ նրանցից ելք է գտնում, հմտորեն լուծելով և վերացնելով այդ դժվարությունները, ապա դա հնարա-



վոր է լինում միայն շնորհիվ մեր մեծ պարտիայի բացառիկ կազմակերպվածության և կարգապահության, շնորհիվ նրա Կենտրոնական Կոմիտեի ղեկավարության։

Բոլշևիկների պարտիայի քաղաքականության հաջողությունները ձեռք են բերվել այն բանի շնորհիվ, որ պարտիան իր գործունեության մեջ անշեղորեն ղեկավարվել է Լենինի ուսմունքով, նրա պատգամներով։ Մեր երկրում արդարացիորեն լենինիզմը անվանում են բոլշևիկների պարտիայի դրոշ, միլիոնավոր աշխատավորների դրոշ։

Կար ժամանակ, երբ սոցիալիստները միայնակներ էին և չէին կարող քիչ թե շատ էական ազդեցություն ունենալ հասարակական զարգացման ընթացքի վրա։ Մարքսիստական-լենինյան ուսմունքի ուժը այն է, որ այդ ուսմունքը, ինչպես ասել է ընկեր Ստալինը, բանվոր դասակարգի հավատի խորհրդանիշն է, նրա ռևոլյուցիոն դրոշը։ 40 տարի առաջ իր «Անարխի՞զմ, թե սոցիալիզմ» նշանա-

վոր աշխատության մեջ ընկեր Ստա-լինը գրել է.

«Մարքսը և Էնգելսը հանդիսանում են ոչ թե սոսկ փիլիսոփայական ո-րևէ «դպրոցի» հիմնադիրներ—նրանք կենդանի պրոլետարական շարժման կենդանի առաջնորդներն են, շար-ժում, որը օրըստօրե աճում և ամրա-նում է։ Ով պայքարում է այդ ուս-մունքի դեմ. ով ցանկանում է այն «տապալել», նա պետք է լավ հաշվի առնի այս բոլորը, որպեսզի իզուր տեղը իր ճակատը չջարդի անհավա-սար պայքարում»։ (Երկեր, հատ. I, էջ 350)։

Պատմության մեջ չի եղել պար-տիայի և իր դասակարգի, իր ժողո-վրդի միջև այնպիսի ամուր կապի օ-րինակ, որպիսին ունի բոլշևիկների պարտիան։ Լենինյանները դրանք բանվոր դասակարգի գործի, ժողովրդի գործի համար իսկական մարտնչողներ են։ Նրանք միաձուլվում են ժողովրդի հետ և ընթանում են նրա առջևից, այդ ժողովրդին տանում են իրենց ետևից, վայելում են աշխատավորների ան-



սահման վստահությունը և աջակցու-թյունը։

Մեծ, անսպառ է մեր սովետական ժողովրդի սերը իր հարազատ պար-տիայի, Լենինի-Ստալինի պարտիայի նկատմամբ։ Աշխատավորների այդ սերն ու վստահությունը պարտիայի նկատմամբ, մասսաների մեջ լենին-յան պարտիայի ունեցած միանգա-մայն բացառիկ հեղինակությունը ծագել և զարգացել են մեր ժողովրդի ազատության ու երջանկության հա-մար պարտիայի կողմից մղվող եր-կար տարիների պայքարի ընթաց-քում։ Կես դար շարունակվում էր պարտիայի այդ հերոսական, անձ-նվեր պայքարը, որը պսակվեց հա-մաշխարհային-պատմական հաջողու-թյուններով։

23 տարի առաջ ընկեր Ստալինը Լենինի մահվան առթիվ իր ճառում ասաց.

«Աշխատավորները դարեր շարու-նակ տասնյակ և հարյուրավոր անգամ փորձել են ուսերից թոթափել հարըս-տահարիչներին և դառնալ իրենց

դրության տերերը։ Բայց յուրաքանչյուր անգամ, ջախջախված և խայտառակված, նրանք ստիպված են եղել նահանջել, հողում թաքցնելով վիրավորանքն ու ստորացումը, զայրույթն ու հուսահատությունը և հայացքները ուղղելով անհայտ երկնքին, որտեղ նրանք հույս են ունեցել փրկություն գտնել։ Ստրկության շղթաները մնացել են անձեռնմխելի, որովհետև հին շղթաները փոխարինվել են նոր, նույնքան ծանր և ստորացուցիչ շղթաներով։ Միայն մեր երկրում աշխատավորների ճնշված և հարստահարված մասսաներին հաջողվեց ուսերից թոթափել կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը և նրա տեղը դնել բանվորների ու գյուղացիների տիրապետությունը։ Դուք գիտեք, ընկերներ, և այժմ ամբողջ աշխարհը այդ ընդունում է, որ այդ հսկայական պայքարը ղեկավարել են ընկեր Լենինը և նրա պարտիան։

Աշխատավորների ազատության և երջանկության, սոցիալիզմի համար



պարտիայի մղած այդ պայքարումն է իր լենինյան-ստալինյան պարտիայի նկատմամբ սովետական ժողովրդի մեծ սերը և լիակատար վստահության աղբյուրը։ (Ծափահարություններ)։

Բոլշևիկների պարտիայի նկատմամբ համաժողովրդական վստահության ուժը, սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնության ուժը ցայտուն կերպով արտահայտվում է սովետական իշխանության կենտրոնական և տեղական օրգանների ընտրությունների մեջ։ Մեր ժողովուրդը ոգևորությամբ է նախապատրաստվում միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ընտրություններին, գործով իրականացնելով սովետական դեմոկրատիայի, աշխատավորների համար դեմոկրատիայի սկզբունքները։ Ներկայումս յուրաքանչյուր ոք տեսնում է, թե մեծ Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան որքան միահամուռությամբ են պաշտպանում կոմունիստների ու անպար-

տիականների ժողովրդական բլոկի կողմից միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատության համար առաջադրված թեկնածուներին։ Յուրաքանչյուրը տեսնում է, թե ինչ քերկրանքով են սովետական մարդիկ դեպուտատության թեկնածուներ առաջադրում իրենց ղեկավարներին, պարտիայի ու պետության գործիչներին, իրենց դաստիարակիչ և առաջնորդ մեծ Ստալինին։ (**Ծափահարությունների բուռն ուռա: Ներկա եղողները կանգնած ողջունում են ընկեր Ստալինին**): Ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների առաջիկա ընտրությունները ավելի ևս կամրապնդեն պարտիայի և աշխատավորների կապը, կամրապնդեն մեր Սովետները և կառաջացնեն Սովետների ամբողջ աշխատանքի հետագա վերելք։

Սովետական ժողովրդի վստահությունն ու սերը լենինյան պարտիայի նկատմամբ ցայտուն արտահայտու-



թյուն են գտնում մեր պարտիայի աճման մեջ, որը մշտապես իր շարքերն է ներգրավում բանվոր դասակարգի, որպես մեր հասարակության առաջավոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի լավագույն մարդկանց։ Ինչպես հայտնի է, Հայրենական պատերազմում պարտիան կորցրեց իր հարյուր հազարավոր զավակներին, որոնք հերոսաբար մարտնչելով թշնամու դեմ սովետական Զինված Ուժերի առաջին շարքերում իրենց կյանքը նվիրեցին սովետական Հայրենիքին։ Բայց դրա հետ միաժամանակ պարտիայի մեջ անընդհատ մտնում էին երկրի նորանոր առաջավոր մարդիկ։ Նրանք անընդհատ ուժեղացնում էին պարտիան, նեցուկ հանդիսանում նրա համար, որովհետև սովետական մարդիկ մեր պարտիան համարում են իրենց մոտիկ և հարազատ պարտիա, կամավոր կերպով վստահում են նրան իրենց ճակատագիրը, նրանք սրտանց շահագրգռված են ընդլայնելու և ամ-

ամրապնդելու մեր լենինյան պարտիան։ Պատերազմի տարիներին մեր պարտիան ոչ միայն չնվազեց, այլ նույնիսկ բազմապատկեց իր շարքերը։ Պատերազմից առաջ պարտիայի մեջ կար մոտ 3 և կես միլիոն անդամ ու թեկնածու, իսկ այժմ նրա շարքերում կա ավելի քան 6 միլիոն մարդ։

Դա՛ մեծ ուժ է, ընկերներ։ (Ծափահարություններ):

Մեր բոլշևիկյան պարտիան շարունակում է ուժեղացնել և ամրապնդել իր կազմը։ Մեր պարտիայի հիմնական կորիզը ներկայումս կազմում են մեր երկրի կադրային բանվորները և առաջավոր կոլխոզնիկները։ Պարտիայի մեջ են ներգրավված սովետական ինտելիգենցիայի լավագույն մարդիկ։ Ներկայումս պարտիայի կազմում կան բարձրագույն կրթություն ունեցող ավելի քան 400 հազար կոմունիստ և միջնակարգ կրթություն ունեցող՝ մոտ 1.300 հազար, 145 հազար ինժեներ, 24 հազար ագրոնոմ և գյուղատնտեսու-



թյան այլ մասնագետներ, համարյա 40 հազար բժիշկ, 80 հազար մանկավարժ։

Մեր պարտիայի համար մեծ նվաճում է այն, որ նրա կազմում կա ավելի քան մեկ միլիոն կին կոմունիստ։ Դա նշանակում է, որ Սովետական Միությունում տղամարդու հետ հավասար իրավունք վայելող կինը հսկայական ուժ է ներկայացնում երկրի քաղաքական-տնտեսական և կուլտուրական կյանքում։

Բուրժուական երկրներում ներկայումս կառավարող պարտիաներից ո՞ր պարտիան կարող է ասել ժողովրդի մեջ ունեցած իր նմանօրինակ հեղինակության մասին, իր նրկատմամբ տածվող աշխատավորների ամենալայն մասսաների վստահության և սիրո մասին։

Նման պարտիա չկա և չի կարող լինել բուրժուական կառավարող պարտիաների և նրանց մոտիկ պարտիաների մեջ։

Հասկանալի է, որ այդպիսի պարտիային, ինչպիսին բոլշևիկների

պարտիան է, ներկայացվող պահանջներն էլ մեծ են։

Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեն պահանջում է ավելի ևս ուժեղացնել մեր պարտիական կազմակերպությունների ղեկավար մարտական դերը սովետական ամբողջ կյանքում, բարձրացնել պարտիական կազմակերպությունների ակտիվությունը մեր արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության վերականգնման և հետագա զարգացման գործում, մեր ամբողջ ժողովուրդը ոտքի հանել 1947 թվի՝ նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանը կատարելու և գերակատարելու համար։

Ընկերներ. ահա արդեն կես դար է, որ մեր երկրի առաջավոր մարդիկ պայքարում են լենինիզմի դրոշի ներքո։ Որքա՜ն զանազան քաղաքական պարտիաներ են ծագել և համարյա անհետ կորել այդ ժամանակամիջոցում ժամանակակից խոշոր շատ պետություններում։ Եվ միայն մեր փա-



ռապանծ պարտիան է կանգնած եղել և կանգնած է այս բոլոր տարիներին, որպես հզոր մի հսկա, ուժերով ու առուգությամբ լի, սրատես և իմաստուն, աշխարհը հիացնելով իր իրոք որ անթառամ հաղթանակներով։ Լենինը կոմունիստական պարտիան անվանում էր մեր դարաշրջանի միտքը, պատիվը և խիղճը։ Մեր պարտիան այդ աչքի ընկնող հատկությունների համար պարտական է Լենինին։

Ընկեր Ստալինն ասում է. «Մեզ կոփել է մեծ Լենինը, մեր առաջնորդը, մեր ուսուցիչը, հայրը, որը պայքարում երկյուղ չի իմացել և չի ճանաչել»։ Հենց բոլշևիկների պարտիան է եղել այդպիսի ուղղություն տվող ուժը, որը սովետական մարդկանց տարել է առաջ ու առաջ դեպի Լենինի գծած մեծ նպատակը՝ դեպի կոմունիզմ։ Մեծ Լենինի մահից հետո վերջնականապես կազմավորվեց մեր պարտիայի այն ղեկավար կորիզը, որ պարտիայի թշնամիների դեմ մղված դաժան մարտերում պաշտ-

պանեց Լենինի մեծ դրոշը, միավորեց և համախմբեց ամբողջ պարտիան, ամբողջ ժողովուրդը Իլյիչի պատգամների շուրջը, դուրս բերեց սովետական բանվոր դասակարգին, մեր գյուղացիությանը և ինտելիգենցիային կոմունիստական հասարակության կառուցման լայն և ճիշտ ճանապարհը։ Բոլշևիկյան պարտիայի այդ կորիզը հանդիսանում է մեր Կենտրոնական Կոմիտեն, որի ղեկավարը և պարտիայի ու պետության առաջատար ուժը եղել է և հանդիսանում է Լենինի ականավոր աշակերտ, նրա արժանավոր հաջորդ և մեծ շարունակող ընկեր Ստալինը։

(Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում):

Թո՛ղ ուրեմն այսուհետև ևս ապրի ն ամրապնդվի Լենինի-Ստալինի կողմից ստեղծված և գաստիարակված մեր փառապանծ պարտիան։ Կեցցե՛ մեր պարտիայի անպարտելի դրոշը՝ լենինիզմը։



Կեցցե՛ սովետական մեծ ժողովուրդը՝ սոցիալիզմ կերտողը։

Կեցցե՛ Լենինի գործի մեծ շարունակող, սովետական ժողովրդի դաստիարակիչ և առաջնորդ, մեր հարազատ ընկեր Ստալինը։ (Բուռն, երկար շլրող ծափահարություններ ի պատիվ ընկեր Ստալինի: Բոլորը ոտքի են կանգնում: Նիստի մասնակիցները երգում են պարտիայի հիմնը՝ «Ինտերնացիոնալը»):

— O —

## „ԼՈՒԿ" ԺՈՒՌՆԱԼԸ ՀՐԱՊԱՐԱԿԵԼ Է ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ԻՆՏԵՐՎՅՈՒՆ ԷԼԼԻՈՏ ՌՈՒԶՎԵԼՏԻ ՀԵՏ

*ՆՅՈՒ-ՅՈՐՔ, 20 հունվարի (ՏԱՍՍ). —«Լուկ» ժուռնալը հրապարակել է Էլլիոտ Ռուզվելտի հոդվածը, որը պարունակում է 1946 թվի դեկտեմբերի 21-ին ընկեր Ստալինի հետ ունեցած ինտերվյուն։ Հոդվածում բերվում են Ի. Վ. Ստալինի պատասխանները Ռուզվելտի տված 12 հարցին։ Բերում ենք Ռուզվելտի հարցերի և Ի. Վ. Ստալինի պատասխանների տեքստը.*

*1. ՀԱՐՑ.— Արդյոք Դուք հնարավոր համարու՞մ եք այնպիսի դեմոկրատիայի համար, ինչպիսին են Միացյալ Նահանգները, խաղաղասիրությամբ կողք-կողքի ապրել այս աշխարհում պետական կառավարման այնպիսի կոմունիստական ձևի հետ,*



*որպիսին գոյություն ունի Սովետական Միությունում, և որ ո՛չ մեկ, ո՛չ էլ մյուս կողմից փորձ չի արվի միջամտել մյուս կողմի ներքին քաղաքական գործերին։*

*ՊԱՏԱՍԽԱՆ.— Այո, իհարկե։ Դա ոչ միայն հնարավոր է։ Դա խելացի և միանգամայն իրագործելի է։ Պատերազմի շրջանում ամենալարված ժամանակներում կառավարման ձևերի տարբերությունները չխանգարեցին մեր երկու երկրներին միավորվել և հաղթել մեր թշնամիներին։ Ավելի ևս մեծ չափով հնարավոր է այդ հարաբերությունների պահպանումը խաղաղ ժամանակ։*

*2. ՀԱՐՑ.— Արդյոք Դուք գտնու՞մ եք, որ Միավորված Ազգերի հաջողությունը կախված է քաղաքականության արմատական հարցերի և նպատակների վերաբերյալ Սովետական Միության, Անգլիայի և Միացյալ Նահանգների միջև համաձայնության գալուց։*

*ՊԱՏԱՍԽԱՆ.— Այո, ես այդպես եմ կարծում։ Շատ տեսակետներից*

Միավորված Ազգերի, որպես կազմակերպության, բախտը կախված է այդ երեք տերությունների միջև ներդաշնակություն ձեռք բերելուց։

3. ՀԱՐՑ.— Արդյոք Դուք, Գեներալիսիմուս, գտնո՞ւմ եք, որ ընդհանուր խաղաղության ճանապարհին կարևոր քայլ կհանդիսանար մեր երկու երկրների միջև արդյունաբերական ապրանքների և հումքի փոխադարձ փոխանակման վերաբերյալ տնտեսական լայն համաձայնության հանգելը։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Այո, ես կարծում եմ, որ դա կհանդիսանար կարևոր քայլ ընդհանուր խաղաղություն հաստատելու ճանապարհին։ Իհարկե, ես դրան համաձայն եմ։ Միջազգային առևտրի ընդլայնումը շատ տեսակետներից կնպաստեր բարի հարաբերությունների զարգացմանը մեր երկու երկրների միջև։

4. ՀԱՐՑ.— Արդյոք Սովետական Միությունը կողմնակի՞ց է, որպեսզի Միավորված Ազգերի Անվտանգության խորհուրդը բոլոր Միավորված



Ազգերի զինված ուժերի մասնակցությամբ անհապաղ ստեղծի միջազգային ոստիկանական ուժեր, որոնք անհապաղ հանդես կգային ամենուրեք, որտեղ խաղաղությանը կսպառնային պատերազմական գործողությունները։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Իհարկե։

5. ՀԱՐՑ.— Եթե Դուք գտնում եք, որ Միավորված Ազգերը պետք է վերահսկողության տակ վերցնեն ատոմային ռումբը, ապա չպե՞տք է արդյոք նրանք այդ անեն տեսչության միջոցով, բոլոր հետազոտական ինստիտուտների ու ամեն տեսակ սպառազինություն արտադրող արդյունաբերական ձեռնարկությունների նկատմամբ և ատոմային էներգիայի խաղաղ օգտագործման ու զարգացման նկատմամբ վերահսկողություն սահմանելու միջոցով։ (Այստեղ Էլիոտ Ռուզվելտը ծանոթագրում նշում է.— Ստալինն անհապաղ ինձ հարց տվեց՝ «Առհասարա՞կ»։ Ես ասացի՝ «Այո, բայց մասնավորապես Ռուսաստանը արդյոք սկզբունքորեն համաձա՞յն է նման պլանի հետ»)։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Իհարկե։ Համաչափության սկզբունքի հիման վրա Ռուսաստանի համար ոչ մի բացառություն չպետք է արվի։ Ռուսաստանը պետք է ենթարկվի տեսչության և վերահսկողության նույն կանոններին, ինչպես որ մյուս բոլոր երկրները։ (Այստեղ Ռուզվելտը փակագծերում նշում է. «Նրա պատասխանում ոչ մի տատանում չկար։ Եվ վետոյի իրավունք վերապահելու հարցը նույնիսկ չհիշատակվեց»)։

6. ՀԱՐՑ.— Արդյոք Դուք օգտակար համարո՞ւմ եք Մեծ Եռյակի նոր խորհրդակցության հրավիրումը՝ ընդհանուր խաղաղությանը ներկայումս սպառնացող միջազգային բոլոր պրոբլեմները քննարկելու համար։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ես գտնում եմ, որ պետք է տեղի ունենա ոչ թե մեկ խորհրդակցություն, այլ մի քանի խորհրդակցություն։ Եթե տեղի ունենար մի քանի խորհրդակցություն, դրանք կծառայեին չափազանց օգտակար նպատակի։ (Այստեղ Ռուզվելտը փակագծերում նշում է. «Այդ պահին



իմ կինը հարցրեց, թե արդյո՞ք նա գտնո՞ւմ է, որ այդպիսի խորհրդակցությունները կնպաստեին համապատասխան կառավարությունների ներկայացուցիչների միջև ստորադաս աստիճաններում ավելի սերտ հարաբերություններ սահմանելու գործին։ Նա նաև հարցրեց, թե նման դրություն ձեռք բերվե՞լ է արդյոք պատերազմի ժամանակվա կոնֆերանսների հետ կանքով։ Ստալինը պատասխանեց ժպտալով դեպի նրա կողմը. «Դրանում ոչ մի կասկած չկա։ Պատերազմի ժամանակվա խորհրդակցությունները և ձեռք բերված արդյունքները զգալիորեն օգնեցին ստորադաս աստիճաններում համագործակցություն սահմանելուն»)։

7. ՀԱՐՑ.— Սըր, ես գիտեմ, որ Դուք ուսումնասիրում եք մյուս երկրներում գոյություն ունեցող բազմաթիվ քաղաքական և սոցիալական պրոբլեմներ։ Այդ պատճառով ես կցանկանայի Ձեզ հարցնել, թե Դուք գտնո՞ւմ եք արդյոք, որ նոյեմբերին Միացյալ Նահանգներում տեղի ունե-

ցած ընտրությունները վկայում են, որ ժողովուրդը Ռուզվելտի քաղաքականության նկատմամբ ունեցած հավատից հեռացել է նրա քաղաքական հակառակորդների իզոլյացիոնիստական քաղաքականության կողմը։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ես այնքան լավ ծանոթ չեմ Միացյալ Նահանգների ժողովրդի ներքին կյանքին, բայց ինձ թվում է, թե ընտրությունները վկայում են, որ այժմյան կառավարությունը վատնում է հանգուցյալ պրեզիդենտի ստեղծած բարոյական ու քաղաքական կապիտալը և, այդպիսով, նա հեշտացրել է ռեսպուբլիկականների հաղթանակը։ (Այստեղ Ռուզվելտը փակագծերում նշում է. «Իմ հետևյալ հարցին Գեներալիսիմուսի պատասխանից շատ ընդգծված»)։

Ձ. ՀԱՐՑ.— Ինչի՞ն եք Դուք վերագրում Ռուզվելտի մահվանից ի վեր մեր երկու երկրների միջև բարեկամական կապերի և փոխըմբռնման թուլացումը։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ես կարծում եմ,



որ եթե այս հարցը վերաբերում է ամերիկյան և ռուս ժողովուրդների միջև եղած կապերին ու փոխըմբռնմանը, ապա ոչ մի վատացում տեղի չի ունեցել, այլ ընդհակառակը, հարաբերությունները բարելավվել են։ Ինչ վերաբերում է երկու կառավարությունների միջև եղած հարաբերություններին, ապա ծագում էին թյուրիմացություններ։ Տեղի ունեցավ որոշ վատացում, իսկ այնուհետև մեծ աղմուկ բարձրացավ և սկսեցին ճչալ այն մասին, թե հետագայում հարաբերությունները ավելի ևս կվատանան, բայց ես այստեղ սարսափելի ոչինչ չեմ տեսնում խաղաղությունը խախտելու կամ ռազմական կոնֆլիկտի իմաստով։ Ոչ մի մեծ տերություն, նույնիսկ եթե նրա կառավարությունը դրան ձգտում էլ է, չէր կարողանա ներկայումս մեծ բանակ դուրս բերել դաշնակից մյուս տերության, մյուս մեծ տերության դեմ պայքարելու համար, որովհետև ներկայումս ոչ ոք չի կարող պատերազմել առանց իր ժողովրդի, իսկ ժողովուրդը չի ցան

...նում պատերազմել։ Ժողովուրդները հոգնել են պատերազմից։ Բացի դրանից, չկա ոչ մի հասկանալի նպատակ, որը արդարացներ նոր պատերազմը։ Ոչ ոք չէր իմանա, թե ինչի համար պետք է ինքը պայքարի, և այդ պատճառով ես սարսափելի ոչինչ չեմ տեսնում այն բանում, որ Միացյալ Նահանգների կառավարության որոշ ներկայացուցիչներ խոսում են մեր միջև հարաբերությունների վատանալու մասին։ Այս բոլոր նկատառումների լույսով, ես կարծում եմ, որ նոր պատերազմի սպառնալիքը ռեալ չէ։

9. ՀԱՐՑ.— Արդյոք Դուք կողմնակի՞ց եք մեր երկու երկրների միջև կուլտուրական և գիտական բնույթի ինֆորմացիայի լայն փոխանակմանը։ Արդյոք Դուք նաև կողմնակի՞ց եք ուսանողների, արտիստների, գիտնականների, պրոֆեսորների փոխանակմանը։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Իհարկե։

10. ՀԱՐՑ.— Արդյոք պե՞տք է Միացյալ Նահանգները և Սովետական Միությունը մշակեն Հեռավոր Արևելքի



ժողովուրդներին օգնելու ընդհանուր երկարատև քաղաքականություն։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ես գտնում եմ, որ դա օգտակար կլիներ, եթե դա հնարավոր լիներ։ Համենայն դեպս մեր կառավարությունը պատրաստ է Միացյալ Նահանգների հետ ընդհանուր քաղաքականություն կիրառել հեռավոր-արևելյան հարցերի վերաբերմամբ։

11. ՀԱՐՑ.— Եթե Միացյալ Նահանգների և Սովետական Միության միջև համաձայնություն ձեռք բերվի փոխառությունների կամ վարկերի սիստեմի վերաբերյալ, արդյոք նման համաձայնությունները երկարատև օգուտ կբերե՞ն Միացյալ Նահանգների էկոնոմիկային։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Նման վարկերի սիստեմը, անվիճելիորեն, փոխադարձաբար ձեռնտու է ինչպես Միացյալ Նահանգներին, այնպես էլ Սովետական Միությանը։ (Այստեղ Ռուզվելտը փակագծերում նշում է. «Այնուհետև ես տվեցի մի հարց, որը բացահայտ անհանգստություն է առա-

ջացնում Եվրոպայի շատ երկրներում»)։

12. ՀԱՐՑ.— Արդյոք Սովետական կառավարության անհանգստության համար լուրջ հիմք տալի՞ս է այն փաստը, որ Գերմանիայի օկուպացման ամերիկյան և անգլիական գոտիներում չի անցկացվել դենացիֆիկացիայի ծրագիրը։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Ո՛չ, դա լուրջ անհանգստության համար հիմք չի հանդիսանում, բայց, իհարկե, Սովետական Միությանը հաճելի չէ, որ մեր ընդհանուր ծրագրի այդ մասը չի իրագործվում։

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ